# ԹԻՒԵՐՈՒ ԼԵԶՈՒՈՎ

Աւելի քան տասներկու տարի է, ինչ Խ. Միութեան մէջ մարդահամար չի կատարուել: Ոչ ոք գիտէ ճշգօրէն, թէ որքան է բնակչութեան թիւը այդ երկրում: Խ. Միութիւնը 200 միլիո՞ն քաղաքացի ունի, թէ 220, մեզ համար միեւնոյն է: Բայց բոլորս խորապէս հետաքրքրում է իմանալ, թէ ներկայումս որքան Հայ կայ Անդրկովկասում եւ մասնաւորապէս Խ. Հայաստանում:

Մինչեւ Ստալինեան իրաւակարգը պատմութեան չրջուած էջերից մէկը չդառնայ, որեւէ լուրջ եւ անվիճելի վիճակագրութիւն Խ. Միութեան մէջ չի կարող լինել, որովհետեւ այդ եւս ենթակայ է «ղեկավար գծին», փոփոխւում է, չտկւում, ապա լոյս աշխարհ գալիս: Օրինակ, այսօրուայ քաղաքականութիւնը պահանջում է, որ Անդրկովկասում քանակով առաջինը լինեն Վրացիները, երկրորդ՝ Ազերիները, ապա Հայերը: Չեն տրւում ազգային ծագման մանրամասնութիւններ ըստ գաւառների, որպէս զի մութի մէջ մնայ այն փաստը, թէ Հայերը հոծ բազմութեամբ տեղաւորուած են Խ. Հայաստանի սահմանամերձ, բայց նրանից բաժանուած հայկական հողերում:

Ամէն տեղ, երբ ձեռնարկում են որեւէ չինարարական աշխատանքի, տախտակներով պատնիչում են փողոցի մի մասը կամ եզերքը, որպէսզի անցորդները չխանգարեն բանուորներին: Պատահում են ամէն բան հետախուզող մարդիկ որոնք աչքերը փակցրած պատահական մի ծակի, ճգնում են հասկանալ, թէ ինչ են անում պատնէչի միւս կողմում: Մենք էլ այդ վիճակի մէջ ենք «երկաթեայ վարագոյրի» առջեւ ու մղուած ոչ թէ պարապութիւնից, այլ հայրենիքի սիրուց, ճեղք ենք փնտռում կորզելու պատկերը մի երեւոյթի, որն ընկնում է մեր մտքի դիտողութեան առջեւ:

Այս տարուայ Փետրուար 18ին եւ 25ին տեղի ունեցան 16 հանրապետութիւնների Գերագոյն Խորհուրդների ընտրութիւնները: Հրատարակուեցան, ըստ ամէն մի հանրապետութեան, քուէի իրաւունք ունեցողների թիւերը — այս է մեզ համար կարեւորը: Իսկ թէ 99.9 տոկոսը մասնակցեց ձայնատուութեան յօգուտ համայնավարների, թող դա իրենց կեղծ ոգեւորութիւնը բոնկէ. մեզ նոյնքան է չահագրգռում, որքան անցեալ տարուայ անձրեւը:

Ըստ խորհրդային Սահմանադրութեան քուէի իրաւունք ունին 18 տարեկանից վեր քաղաքացիները: Փորձելով համադրել նրանց քանակները անցեալ եւ ներկայ տարիներին, մենք կարող ենք գաղափար կազմել այն փոփոխութիւնների մասին, որոնց ենթարկուել է Խ. Հայաստանի հասուն բնակչութիւնը:

1937ին, Դեկտեմբերին Խորհրդ. Միութիւնն ունէր 89.063 հազար ընտրող:

1946ին 101.717, 1947ին 103.967, 1950ին 111.008, 1951ին 113.049 հազար ընտրող:

Վերջին պատերազմն անկասկած ազդած է այս թիւերի վրայ, մի կողմից կորուստ, միւս կողմից յաւելում նոր հողամասերի կցումով: Եթէ մենք սահմանափակուելիք Անդրկովկասի հանրապետութիւններով՝ համեմատութիւնները կը լինեն աւելի ճիշդ, որովհետեւ նրանք մնացել են նոյն մակարդակի վրայ, բացի մի բացառիկ երեւոյթից, ներգաղթից դէպի Հայաստան: Հեռուն չգնանք, վերցնենք միայն վերջին չորս տարիները:

Ընտրողներ հազարով կային.—

Վրաստան 1947ին 2.056, 1950ին 2.179, 1951ին 2.201, յաւելում 145.7 առ հարիւր:

Ազրբէյջան 1947ին 1.598, 1950ին 1.677, 1951ին 1.725, յաւելում 127, 8 առ հարիւր:

Հայաստան 1947ին 713, 1950ին 769, 1951ին 786, յաւելում 73, 10 առ հարիւր:

1947 — 1951 ամբողջ Միութեան ընտրողների աճումը եղել է 9 առ հարիւր:

1937 Յունուար 17ի մարդահամարի ժամանակ Խ. Հայաստանի բնակչութեան աճումը, 1926 Դեկտեմբեր 17ի հետ համեմատելով 45.4 առ հարիւր էր եւ այդ մարզում Խ. Միութեան մէջ առաջնութիւն չահելու համար մրցութեան մէջ էր Ղրղզստանի հետ — 45.7 առ հարիւր, նոյն ժամանակաշրջանում Ուկրայինայի բնակչութիւնը աւելացել էր 6 առ հարիւր, Ղազախստանինը 1 առ հարիւր, Բէլօռուսիոյ — 11 առ հարիւր, Ռուսաստանինը 16 առ հարիւր էին.: Միջին՝ ամբողջ Խ. Միութեան — 15 առ հարիւր: Վերջին քսանամեակում Խ. Հայաստանի բնակչութեան յաւելումը հազիւ անցնում է Միութեան միջին սակից եւ չատ յետ է մնում Կարելօ-Ֆիննական հանրապետութիւնից, 40 առ հարիւր եւ նոյն Ղրղզստանից 13 հարիւր եւ ուրիշներից:

Ապա ներգաղթողնե՞րը: Անչուշտ նրանք բոլորը չմասնակցեցան 1947 թ. ընտրութիւններին, բայց մտան 1951ի ցուցակները: Ուրեմն աճումը չատ աւելի թոյլ է, քան հաշւում ենք:

1939 թուի մարդահամարին Խ. Հայաստանի 1.281.599 բնակիչների մէջ 18 տարին անցածների թիւն էր 632.220, ուրեմն մօտաւորապէս կէսը: Եթէ ընդունինք, որ հարիւր հազար ներգաղթողների կէսը ընտրող էր 1951 թւին, բայց մի մասն արդէն տեղ էր հասած ու արձանագրուած 1947 թւից առաջ, 73 հազար քառամեակի յաւելումից գէթ 25.000 վար պիտի առնենք: Ուրեմն 1947—1951 Խ. Հայաստանի բնակչութիւնը, բնական աճման հետեւանքով, աւելացել է միայն 6ից 7 առ հարիւր:

Ճառերի մէջ ու արքունական մամուլի էջերում Խ. Հայաստան ծաղկում է եւ բարգաւաճում, «առաջադէմ ընկերվարական հանրապետութիւն է» եւ Արութինովի նաւապետութեամբ, առագաստները բացած, սաւառնում է դէպի համայնավարական կարգուսարքի նաւահանգիստը: Իսկ իրականութեան մէջ նա քարշ է տալիս իր գոյութիւնը՝ կծկուած Արաքսի ու Արագածի նեղլիկ միջանցքում, անկարող գործ, ապրուստ ու հմայք տալու իր զաւակներին, որոնք ամէն օր աւելի եւ աւելի թւով գնում են դէպի հիւսիս — բժիշկ, ճարտարագէտ, ուսուցիչ, դերասան, երաժիշտ, ծառայող, բանուոր — ցրւում են Խ. Միութեան անծայրածիր տարածութեան վրայ, ընդմիշտ կորւում հայ ազգի համար: Խ. Միութեան ո՞ր անկիւնում Հայ չկայ: Եւ Խ. Հայաստանի ստալինեան ազաները գոհ են դրանից: Հաճոյքից ճաթելով յայտարարում են, թէ Երեւանի համալսարանի վկայեալները չատ գնահատուած են Խ. Միութեան մէջ, Ուկրայինայում հոգի են տալիս Հայաստանցի բժիշկների եւ գիւղատնտեսների համար: Հայաստան, զուրկ քարիւղի ու երկաթի հանքերից, արտահանում է մարդկային ապրանք: Մասնագէտներ թրծելով ու ծախելով օտարներին Արութինովները գիտակցո՞ւմ են, որ աւելի ու աւելի արինաքամ են անում հայ ազգը: Բայց ի՞նչ կարելի է պահանջել նրանցից, որոնց համար չկայ հայկ. հայրենիք, այլ կայ միայն խորհրդային ստալինեան հայրենիք:

ՀԱՅԿ ՍԱՐԳՍԵԱՆ

ՕՐՈՒԱՆ ՇԱՐԺՈՒՄԻՆ ՀԵՏ

## Պալքանները կրնա՞ն երկրորդ Քորէա մը դառնալ

Ուշագրաւ, թէեւ մակերեսային նմանութիւններ կան Պալքաններու այժմու կացութեան եւ Քորէայի պատերազմէն առաջ այնտեղ տիրող կացութեան միջեւ: Համայնավարները, անգամ մըն ալ կը հետեւին այն մաշած մեթոտին, որ կը մղէ զիրենք մեղադրել իրենց հակառակորդները այն դիտաւորութեանց մէջ, զորս իրենք կը հետապնդեն: Այս կացութեան մէջ, օտար դիտողներ հարց կուտան, թէ արդեօ՞ք Պալքաններն ալ նոր Քորէա մը պիտի դառնան:

«Տէյլի Մէյլ»ի Վիէննայի աշխատակիցը անդրադառնալով այս հարցին կ'ըսէ.— Աւստրիոյ կարմիր մամուլը, այժմէն իսկ կասկածէ դուրս կը հռչակէ այն «իրողութիւնը», թէ «Ամերիկացիները կը ջանան Եւրոպայի մէջ Եուկոսլաւներուն կատարել տալ այն դերը, ինչ որ խաղցուցին Հարաւային Քորէացիներուն՝ Ասիոյ մէջ»: Այսինքն, պիտի ստիպեն Եուկոսլաւները յարձակիլ Կոմինֆորմի խումբին պատկանող իր դրացիներուն վըրայ եւ այնուհետեւ, ՄԱԿի անդամ ուրիշ ազգերու օգնութեամբ, պիտի միջամտեն ի հաշիւ իրենց:

Նմանութիւններ կան անշուշտ Քորէայի երբեմնի եւ Պալքաններու ներկայ կացութեան միջեւ:

1) Երկուքն ալ թերակղզիներ են, մէկը՝ արբանեակ երկիրներու ծայրայեղ արեւելակողմը, միւսը՝ ծայրագոյն արեւմտեան մասին մէջ:

2) Երկուքն ալ բաժնուած են Խ. Միութեան ենթակայ եւ անոր հակակշռէն դուրս մնացող հողամասերու միջեւ: Պալքաններու, ինչպէս Քորէայի մէջ, Ռուսերը կը վարեն, կը զինեն եւ կը մարզեն՝ բաժանման գծին իրենց կողմը գտնուող մասի զօրամասերը:

3) Ինչպէս միշտ վէճեր կային հիւսիսային եւ հարաւային Քորէայի ժողովուրդներուն միջեւ, այնպէս ալ վէճեր կան մէկ կողմէ Եուկոսլաւիոյ եւ Յունաստանի, միւս կողմէ Պուլկարիոյ, Հունգարիոյ եւ Ալպանիոյ միջեւ այն օրէն ասդին, երբ Թիթօն բաժնուեցաւ Կոմինֆորմէն:

Վերջերս այս վէճերը դարձած են աւելի սպառնական: Եուկոսլաւիա քանիցս բողոքեց այն «աննշան բայց տեւական պատերազմական վիճակին» համար, որ կը տիրէ Պուլկարիոյ եւ Հունգարիոյ արեւելեան սահմաններուն եւ իր միջեւ: Ճիշդ նոյն ձեւով կը բողոքեն նաև կոմինֆորմեան երկիրները: Այս բողոքներուն վրայ վերջերս աւելցած է նաեւ գանգատ մը, թէ կոմինֆորմեան երկիրներու դիւանագիտական ներկայացուցիչները դէշ վերաբերումի կ'արժանանան Եուկոսլաւիոյ մէջ: Այս վերջինը կը բողոքէ նմանապէս, թէ Պուլկարիա, Հունգարիա եւ Ռումանիա արտօնուած չափէն աւելի ցամաքային եւ մանաւանդ օդանաւային ուժեր կը պահեն: Միւս կողմէ, Եուկոսլաւիա գաղտնի դիմումներ կը կատարէ, զինամթերք ստանալու Արեւմուտքէն, իր ուժեղ եւ լաւ մարզուած բանակին համար:

Վիէննայի դիւանագիտական շրջանակները, այս անցուդարձերէն կը հանեն հետեւեալ եզրակացութիւնները.—

Նշաններ կան, թէ Ռուսերը ոչինչ պիտի ընեն այժմ, նոր աշխարհամարտ մը փութացնելու համար: Սովորաբար վստահելի աղբիւրներէ տեղեկութիւններ կը հաստատեն, թէ Ռուսիոյ արբանեակ երկիրները, դեռ պէտք եղածին չափ զինուած ու մարզուած չեն պատերազմի մը համար: Ստիպողական ճիգեր ի գործ կը դրուին՝ արբանեակ եւ ռուսական զինուորական դրութիւնները ներդաշնակելու ուղղութեամբ: Արբանեակ բանակներու մէջ կ'ուսուցուին զէնքերու եւ հրամանատարական բացատրութեանց ռուսական բառերը: Տեղեկութիւններ կան նմանապէս, թէ արբանեակ բանակներու սպաները պէտք եղած կերպով չեն մարզուած տակաւին: Հարկ եղած է քանիցս մաքրագործել այս բանակները, որոնց մէջ կը վխտան անվստահելի տարրեր—քաղքենի մարդիկ եւ թիթոյական համայնավարներ — այս պատճառով ալ մնացած են տկար:

Պատերազմի մը մօտալուտ պայթումը դըժուարացնող արդելք մըն է նաեւ պարէնաւորման տագնապը: Սննդամթերքի մեծ պակաս կայ Պուլկարիոյ, Հունգարիոյ եւ Չեխոսլովաքիոյ մէջ, անցեալ տարուան երաշտին պատճառով: Հետեւաբար, մինչեւ յառաջիկայ հունձքը դժուար է որեւէ վճռական քայլ առնել:

Հաստատուն չէ նմանապէս արբանեակ երկիրներու քաղաքական եւ տնտեսական կացութիւնը: Չեխոսլովաքիոյ վերջին անցքերը կը բաւեն հաստատելու, թէ խորարմատ խռովութիւններ կան տակաւին այնտեղ: Զրոյցներու համաձայն, այդ կարգի խռովութիւններ կան նաեւ Հունգարիոյ մէջ: Այս երկու երկիրներու մամուլին մէջ բազմաթիւ իրողութիւններ կը հաստատեն, թէ յաւելուածական արդիւնաբերութիւն մը ապահովելու ճիգերը գոհացուցիչ արդիւնքներ չեն տըւած մինչեւ այսօր: Տնտեսական յարաբերութեանց մէջ ալ ներդաշնակութիւն չկայ: Չեխոսլովաքիա, Հունգարիա եւ Պուլկարիա ի վիճակի չեն իրենցմէ պահանջուած արտադրութիւնները կանոնաւորապէս յանձնելու Խ. Միութեան: Հունգարիա չէ գործադրած Չեխոսլովաքիոյ հանդէպ իր առեւտրական յանձնառութիւնները: Ներդաշնակութեան այս պակասի հետեւանքով ալ կը տուժեն վերոյիշեալ երկիրները:

Միւս կողմէ, արբանեակ երկիրներու մէջ ռուսական գործունէութեան թափը հետզհետէ կը սաստկանայ: Դժուար է ստուգել այս մասին չըրջած լուրերը, որովհետեւ Ռուսերը ընդհանրապէս կը գործեն պաշտօնական անձերու միջոցով, որոնք համազգեստ չեն հագնիր եւ մեծ մասով կը խօսին տեղական լեզուները: Կրնան չափազանցուած ըլլալ նաեւ այն տեղեկութիւնները, թէ կը զօրացուին ռուսական ուժերը արբանեակ երկիրներու եւ մասնաւորապէս Պուլկարիոյ մէջ: Այս կարգի տեղեկութիւններ գրեթէ ամէն տարի հրապարակ կը նետուին, սովորաբար ռուսական գարնանային ռազմափորձերու պատճառով:

Իրագէկներ կ'ըսեն, թէ Պալքաններն ալ կըրնան երկրորդ Քորէա մը դառնալ, եթէ Ռուսերը վստահ ըլլան որ այդպիսի բան մը պիտի չըլլայ ընդհանուր պատերազմի մը սկզբնաւորութիւնը: Ռուսիա չի կրնար անտեսել մէկ բան.— Մ. Նահանգները յստակօրէն ազդարարած են, պատրաստ են աջակցելու Եուկոսլաւիոյ, եթէ յարձակում գործուի անոր վրայ: Այս ազդարարութիւնը պարզօրէն հասկնալի կը դարձնէ, որ Եուկոսլաւիոյ վրայ յարձակում մը կրնայ դուռ բանալ նոր՝ պալքանեան, եւ ապա համաշխարհային պատերազմի մը:

Այս բոլորի եզրակացութիւնը այն է, թէ առ այժմ, Պալքանները, երկրորդ Քորէա մը դառնալու անմիջական վտանգը չեն ներկայացներ:

Թ. Ա. Թ.

ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

Մեծայարգ Պ. Խմբագիր,

Թոյլ տուէք ինձ յայտնել իմ խորին եւ սրտագին շնորհակալութիւնը այն ջերմ վերաբերմունքի համար, որ դուք մատուցիք, ձեր թերթի մէջ հրատարակելով գեղեցիկ յօդուածներ, ինձ համար տրուած դեղարուեստական հանդէսի առթիւ:

Նոյնպէս խնդրում եմ յայտնել, ձեր թերթի միջոցաւ, իմ խորին շնորհակալութիւնները այն բոլոր ազնիւ բարեկամներին, որ չարաչար աշխատանքի արդիւնքով՝ յաջողութեամբ պսակեցին



LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE
HARATCH Fondé en 1925, R.C.S. 376.286
Directeur : SCH. MISSAKIAN
17, Rue Damesme — PARIS (13) Métro: TOLBIAC
Վեցամս. 1100 փր., Տար. 2200, Արտ. 3000 փր.
Tél. GOB. 15-70 Գին 10 փր. C.C.P. Paris 1678-63
Jeudi 10 MAI 1951 Հինգշաբթի 10 ՄԱՅԻՍ
27րդ ՏԱՐԻ — 27 Année No. 6453–Նոր շրջան թիւ 1864
Խմբագիր՝ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

ՄԵՐ ԽՕՍՔԸ

## ԴԵՌ ՉԵՆ ՀԱՆԳՍՏԱՑԱԾ

Պոլսոյ վերջին թղթաբերը նոր տեղեկութիւններ կը հաղորդէ Թուրքիոյ քաղաքական ձեռնարկներու մասին:

Ուաշինկթընի թուրք դեսպանը Անգարա հասած ըլլալով, անմիջապէս վերսկսած են արտակարգ խորհրդակցութիւնները, ի ներկայութեան հանրապետութեան նախագահին :

Մեր ընթերցողները ծանօթ են այս անցուդարձին, որ սերտ կապ ունի Մօտաւոր եւ Միջին Արեւելքի ապահովութեան հետ :

Անգամ մը եւս յիշեցնենք,— Թուրքիան հանգիստ չէ: Կը մնայ մտահոգ՝ վաղուան համար : Հակառակ Անգլիոյ եւ Ֆրանսայի հետ կնքուած զինակցութեան (1939): Հակառակ Մ. Նահանգներուն տնտեսական եւ զինական աջակցութեան եւ պաշտօնական հաւաստիքներուն :

Այս մտահոգութիւնը աւելի ծանրացաւ, երբ արեւմտեան պետութիւնները մերժեցին Թուրքիան (եւ Յունաստանը) անդամ ընդունիլ Ատլանտեանի դաշինքին:

Թուրք հեռագրական գործակալութիւնն ալ պաշտօնապէս հաստատեց թէ՝ Ատլանտեանի զինակիցները չեն ուզեր նոր յանձնառութեանց տակ մտնել :

— « Դաշինքը կնքուած է Եւրոպայի պաշտպանութեան համար: Թուրքիա եթէ մտնէ իսկ Ատլանտեանի զինակցութեան մէջ, չի կրնար օգնութիւն ստանալ, արեւելեան ճակատէն կատարուած յարձակումի մը պարագային: Այս արգելքը բառնալու համար, հարկ պիտի ըլլար լայնօրէն փոփոխել Ատլանտեանի դաշինքը, որ այն ատեն բոլորովին տարբեր հանգամանք մը պիտի ստանար» :

Ուրեմն, Թուրքիոյ համար կը մնար ուրիշ ելք մը,— զինակցութիւն Արեւելեան Միջերկրականի համար, մասնակցութեամբ Մ. Նահանգներուն :

Արդ, Ուաշինկթըն Թուրքիան իր պաշտպանութեան տակ առնելով հանդերձ, չուզեր նոր եւ աւելի լայն յանձնառութեանց տակ մտնել :

Թուրքիա կը յուսար Մ. Նահանգներն ալ կապել անգլեւֆրանքեւթուրք զինակցութեան:

Ուաշինկթըն այս մասնակցութենէն ալ կը խուսափի, նոյն պատճառաբանութեամբ :

Անգարա կ'որոճայ երրորդ ծրագիր մը — թուրքեւամերիկեան զինակցութիւն :

Նախատեսելով թէ Ամերիկացիները այս առաջարկն ալ պիտի մերժեն, թրքական կառավարութիւնը Անգարա կանչեց իր դեսպանը, կացութիւնը լայնօրէն ուսումնասիրելու եւ ելք մը գտնելու համար :

Ինչպէս ըսինք, դեսպանը հասած է արդէն եւ արտակարգ խորհրդակցութիւնը վերսկսած :

Բնականաբար շատ մը պարագաներ գաղտնի կը պահուին, այս խորհրդակցութեանց առթիւ :

Բայց, ուշ - կանուխ պիտի պարզուի ամէն բան: Մանաւանդ որ, Ամերիկացիները իրենք չեն կրնար գաղտնի համաձայնութիւններ կնքել առանց իրենց խորհրդարանին հաւանութեան եւ Դաշնակիցներու գիտութեան :

Թուրքիոյ ընդդիմադիր հոսանքներն ու թերթերն ալ միշտ պատրաստ են վարագոյրը ճեղքելու, կուսակցական մոլեռանդութեամբ կամ քաղաքական բանդիտութեամբ :

Այս ամբողջ անցուդարձին մէջ, հիմնականը Թուրքիոյ յարաճուն մտահոգութիւնն է, որ կրնայ տեղի տալ փորձութեանց :

Օրինակ, ատենէ մը ի վեր բացէ ի բաց կը խօսուի չէզոքութեան մասին,— քաղաքականութիւն մը որուն շնորհիւ Թուրքիան կրցաւ իր գլուխը պահել երկրորդ Աշխարհամարտին:

Անշուշտ ահագին տարբերութիւն կայ երէկուան եւ այսօրուան միջեւ :

Անգարան այնքան յառաջ գացած է արեւմտեան ճակատին հետ որ, դժուար թէ կարենայ դիրք փոխել հիմնովին :

Ապացոյցներէն մէկն ալ՝ իր գործօն մասնակցութիւնը Քորէայի պատերազմին: (Թերթերը կը գրեն թէ 800 հոգինոց նոր գունդ մը պիտի ղրկեն, առաջինը նօսրացած ըլլալով):

Անգարայի ներկայ խարխափումը տեսակ մը բարոյական ճնշում է կամ սակարկութեան փորձ, նոր յենարաններ ճարելու համար :

Շ.

## ՕՐԸ ՕՐԻՆ

### ԿԱՐԱՊԵՏ ԱՐՔ. ՄԱՂԼՄԵԱՆ

Պոլսոյ «Ժամանակ»ը վերջին պահուն կը ծանուցանէ Կարապետ արք. Մաղլմեանի վախճանումը (3 Մայիս):

Ի պատասխան մեր հարցումին, Փարիզի եկեղեցիէն յայտնեցին թէ լուր չունին տակաւին:

Ամէն պարագայի մէջ, լուրը վաւերական կը թուի, քանի որ պոլսահայ թերթին Աթէնքի թղթակիցը տեղեկութիւններ կը հաղորդէ նաեւ հանգուցեալին հիւանդութեան մասին :

Մեր ժամանակակից պատմութեան մէջ տարիներով խօսուած է եւ պիտի խօսուի կարգ մը բարձրաստիճան կղերականներու մասին, իբրեւ հետեւանք իրենց բացասական, յաճախ ապերասան գործունէութեան :

Այս տեսակէտէն, եթէ առաջին երեւելին Պոլսոյ երբեմնի տեղապահն է, Գէորգ արք. Արսլանեան, երկրորդն ալ Յունաստանի հանգուցեալ առաջնորդը կրնայ համարուիլ :

Երկուքն ալ յամառ եւ ինքնահաւան, եղան կենդանի ներկայացուցիչները կղերապետութեան:

Պանտրմայէն մինչեւ Աթէնք, տարի չանցաւ որ միջադէպ մը չծագի Մաղլմեան արք.ի կամայականութեանց հետեւանքով :

Յաճախ բուռն ցոյցեր կատարուեցան իրեն դէմ, եւ սակայն միշտ մնաց անուղղայ:

Երբեմն « յառաջդիմական» հովեր ալ կը փորձէր, աւելի պղտորելով մթնոլորտը :

Թերթերը ժամանակին գրեցին թէ ներգաղթի օրերուն ինքնագլուխ ծախու հանած էր կարգ մը ազգային կալուածներ :

Ինըսունը անց, կը շարունակէր հետեւիլ առաջնորդական գործերուն :

Վերջին տարիներու ընթացքին յաջողած էր միացեալ վարչութիւն մը կազմել, ներկայացուցիչներ հրաւիրելով բոլոր հոսանքներէն:

ՎԱՀԷ

### ԹՐՔԱՀՊԱՏԱԿՆԵՐՈՒ ԽՆԴԻՐԸ

Պոլսոյ երեսփոխան Տոքթ. Անտրէ Վահրամ Էխտեւեալ յայտարարութիւնն ըրած է Ժամանակի, Թուրքիայէն հեռացած Հայերու, Յոյներու եւ Հրեաներու հպատակութեան վերահաստատման մասին (3 Մայիս).—

— Ատնան Մէնտէրէսի կառավարութիւնը, հաւատարիմ կուսակցութեան ծրագրին, բոլոր հայրենակիցներուն առջեւ լայնօրէն բացած է ամէն դուռ: Այսօր, չի կրնար գոյութիւն ունենալ ոեւէ հայրենակից — ըլլայ իսլամ թէ ոչ-իսլամ — որ դանգատի խտրականութեան ոգիէն: Պետական օրէնքները ամէն տեղ եւ ամէնուն համար նոյնութեամբ կը կիրարկուին :

Այս պայմաններուն տակ շատ բնական պէտք է գտնել, երբ վաղը պետական ոեւէ պաշտօնատան սեղանին առջեւ նստած տեսնէք ոչ - իսլամ հայրենակից մը որ իբր պաշտօնեայ իր պարտականութիւնը կը կատարէ :

Ոչ - իսլամ երիտասարդ սերունդը մանաւանդ, որ հանրապետական ոգիով սնած կատարելապէս իւրացուցած է թուրք հաւաքականութեան մշակոյթը, ազգային զգացումները եւ նկարագիրը, առաւելապէս ի վիճակի է պետական պաշտօնեայ դառնալու, եթէ կը փափաքի :

Գալով այն նախկին թրքահպատակներուն, որոնք այլազան պատճառներով երկրէն հեռացած են եւ այժմ կը փափաքին դարձեալ Հայրենիք գալ եւ հոս վերահաստատուիլ, կը մշակուի ծրագիր մը բարեփոխելու համար հպատակութեան օրէնքը, որպէսզի այդ կացութեան մէջ գտնուողները վերադարձի իրաւունք ստանան: Միայն պէտք է ճշդել թէ այս նոր բարեփոխութենէն պիտի կրնան օգտուիլ անոնք միայն որ իրենց հպատակութիւնը չեն փոխած եւ պարզապէս կարգ մը ձեւակերպութիւններ լրացուցած չըլլալով զրկուած են Հայրենիք վերադառնալու իրաւունքէն: Այսուհանդերձ նոր օրինագիծը տակաւին կրնայ բազմաթիւ փոփոխութիւններու ենթարկուիլ Ազգ. Մեծ Ժողովին առջեւ գալէ առաջ: Կը յուսամ թէ այս հարցը եւս ի մօտոյ իր բարւոք լուծումը կը գտնէ :

ՄՕՏԱՒՈՐ ԱՐԵՒԵԼՔԻ խնդիրներու մասին խորհրդակցութիւն մը պիտի կատարուի Փարիզի մէջ, այսօր, հինգշաբթի, Ֆրանսայի եւ Անգլիոյ ներկայացուցիչներուն միջեւ :

## Մոսկուա կրնայ միջամտել, եթէ...

Մ. Նահանգներու Ազգ. Պաշտպանութեան նախարարը, Զ. Ճորճ Մարշըլ, շարունակելով իր յայտարարութիւնները ծերակոյտի միացեալ յանձնախումբերուն առջեւ, յայտարարեց .— « Շատ իրական կարելիութիւն մըն է խորհրդային ուղղակի միջամտութիւնը Քորէայի մէջ եւ եթէ այդպիսի բան մը տեղի ունենայ, հետեւանքը անխուսափելի կերպով պիտի ըլլայ համաշխարհային նոր պատերազմ մը»:

Համաձայն Պ. Մարշըլի, հազարաւոր ռուսական օդանաւեր համախմբուած են Վլատիվոսթոքի, Փորթ Արթիւրի եւ Խարպինի շուրջը: Նմանապէս, Սախալին կղզիի հիւսիսային մասին մէջ, Ճափոնէն 150 քիլմ. հեռու, համախմբուած են համայնավար զօրամասերու կարեւոր ուժեր, որոնց մէջ կան նաեւ «վերադաստիարակուած» ճափոնցի նախկին ռազմագերիներ: Եթէ ռուսական միջամտութիւն տեղի ունենայ, ատիկա պիտի սկսի օդանաւային մեծ յարձակումներով ճափոնական կղզիներու, Օքինավայի եւ Քորէայի մէջ դաշնակից դիրքերուն վրայ: Միջամտելու որոշումը պիտի տան Կրեմլինի մէջ նստող «քանի մը մարդիկ»որեւէ ժամանակ որ յարմար պիտի դատուի անոնց կողմէ :

Պ. Մարշըլի յայտարարութիւնները, որոնք ենթադրաբար կ'արտայայտեն ամերիկեան կառավարութեան տեսակէտները, հիմնովին կը հակասեն զօր. Մէք Արթըրի տեսակէտներուն, որոնց համաձայն Ծայր. Արեւելքի մէջ ռուսական ձեռնարկները ընդհանրապէս պաշտպանողական հանգամանք ունին եւ յարձակման մը նախաբանը չեն կրնար նկատուիլ:

Պաշտպանութեան նախարարը ըսաւ նաեւ թէ ամերիկեան կորուստներու մասին զօր. Մէք Արթըրի ըսածները աննպաստ ազդեցութիւն պիտի գործեն Քորէայի ամերիկեան զօրամասերու վրայ, երբ անոնք իմանան թէ օգնական ուժեր չեն հասնիր եւ «առանց արդարացուցիչ նպատակներու» կը սպաննուին: ՄԱԿի կորուստները, սակայն համեմատաբար թեթեւ են, բաղդատելով համայնավարներու մեծ կորուստներուն հետ: Հիւսիս - Քորէայի երկու բանակներ բնաջնջուած ու տասնորդուած են, իսկ Չինացիները այնպէս մը կոտորուած են, որ չեն կրնար եւ դեռ ժամանակ մըն ալ պիտի չկրնան ուժեղ գործունէութիւն ունենալ :

Իր վկայութեան շարունակութեան մէջ, Պ. Մարշըլ ըսաւ, որ Քորէայի պատերազմը վերջին ձեռնարկն էր յաջողապէս զսպուած կարմիր յարձակումներուն որոնք գործուեցան Պարսկաստանի, Յունաստանի, Թուրքիոյ, Պերլինի, Թրիէսթէի եւ Հնդկաչինի դէմ :

Պ. Մարշըլ ըսաւ նաեւ, որ բաւարար ուժեր չկան դեռ Եւրոպայի մէջ արգիլելու համար ռուսական արշաւանք մը: «Բայց մեր ունեցածն ալ կը բաւէ մտածել տալու Ռուսերուն յարձակելէ առաջ, մանաւանդ որ մենք ունինք հիւլէական գերակշռութիւն մը, զոր անոնք չեն անգիտանար բնաւ »:

Խ. Միութեան ունեցած հիւլէական ռումբերուն մասին խօսելով, Պ. Մարշըլ ըսաւ, թէ Ռուսերը ունին այդ ռումբերը, բայց անոնց պատրաստութիւնը կ'ընթանայ շատ դանդաղ: «Բայց եւ այնպէս չեմ կրնար ըսել թէ երբ այդ ռումբերը պիտի կրնան գործածուիլ մեզի դէմ»: Աւելցուց վերջապէս, որ Մեծն Բրիտանիա եւս որոշած է ՄԱԿի մօտ պաշտպանել ամերիկեան առաջարկ մը, որուն համաձայն պիտի արգիլուի պատերազմական նիւթերու Չինաստան առաքումը: «Ասիկա ուշագրաւ փոփոխութիւն մըն է բրիտանական քաղաքականութեան մէջ»:

╳ Հարաւ - Քորէայի ուժերը, ՄԱԿի հրետանիին ու հրասայլերուն օժանդակութեամբ, կը շարունակեն մաքրել գրաւուած հողամասերը ռազմաճակատի երկու թեւերուն վրայ, Սէուլէն 30 քիլմ. դէպի հիւսիս - արեւմուտք եւ Ինժէի հարաւը: Կարմիրները ետ կը քաշուին դէպի 38րդ զուգահեռական, 4 — 5 քիլմ. հեռաւորութեան մը վրայ: Կարմիր ընկրկումը կը վերագրուի այն իրողութեան, որ Ռուսերը, յարձակողականի առաջին օրերուն, պէտք եղած օդանաւերն ու հրասայլերը չեն տրամադրած իրենց, այս պատճառով ալ կրած են մեծ կորուստներ: Այս պարագան վհատութիւն պատճառած է չինեւքորէական ուժերուն: Ամերիկեան օդանաւերը 110 թոն ռումբ նետեցին Հիւս. Քորէայի մայրաքաղաքի կայարանին վրայ :

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ. էջ)

ՊԱԼՔԱՆՆԵՐԷՆ հասած լուրերու համաձայն, ռուսական զինուորներ կը փոխադրուին Ռումանիա, եւ անկէ՝ Հունգարիա եւ Պուլկարիա: Ուրիշ տեղեկութեան մը համաձայն, ռուսական հրամանատարութիւնը ստանձնած է Սեւ Ծովու ափերուն պաշտպանութիւնը, խորհրդային սահմանագլուխէն մինչեւ թրքական սահմանը: Եւ վերջապէս կ'ըսուի թէ ռուս զինուորները ռումանական սահմանը կ'անցնին Կալացէն եւ Քոնսթանցայէն :

երկրին ներքին ու արտաքին ապահովութիւնը, Ֆիլիփեան կղզիներուն, Թայլանտին եւ Ֆորմօզայի ազգայնական Չինացիներուն, որպէսզի այս կղզին չիյնայ կարմիրներու ձեռքը: Պէտք է օգնել Հարաւային Ամերիկայի պետութեանց, որովհետեւ առանց այդ օգնութեան, անոնք չեն կրնար մեր կիսագունդի պաշտպանութեան մասնակցիլ: Տնտեսական աջակցութիւն պէտք է ընել Արեւմտեան Գերմանիոյ, Աւստրիոյ, Թրիէսթէի, Եուկոսլաւիոյ, Թուրքիոյ եւ Յունաստանի: Պէտք է վերջապէս օգնել Միջին Արեւելքին, որովհետեւ այս շրջանը, Եւրոպայի հաղորդակցութեանց կարեւոր մէկ հանգոյցն է, կը պարունակէ կէսը քարիւղի համաշխարհային արտադրութեան եւ ուրիշ որեւէ շրջանէ աւելի ենթակայ է խորհրդային ճնշումին: Զինուորականէն զատ տնտեսական աջակցութիւն մըն ալ պէտք է տրուի Իրանին:

Գլուխներու բաժնելով, Նախագահը կը պահանջէ հետեւեալ գումարները.—

Ա) Զինուորական աջակցութիւն.— Եւրոպային՝ 5240 միլիոն տոլար: Միջին Արեւելքին եւ Հիւսիսային Ափրիկէին՝ 415 միլիոն: Ասիոյ՝ 555 միլիոն: Հարաւային Ամերիկային՝ 40 միլիոն:

Բ) Տնտեսական աջակցութիւն.—Եւրոպային՝ 1650 միլիոն: Միջին Արեւելքին եւ Հիւսիսային Ափրիկէին՝ 125 միլիոն: Ասիոյ՝ 275 միլիոն: Հարաւային Ամերիկային՝ 22 միլիոն: Վարչական ծախքեր՝ 78 միլիոն: Համագումար՝ 8500 միլիոն, որուն 6250ը որպէս զինուորական աջակցութիւն եւ մնացածը տնտեսական:

---

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵՒՐՈՊԱՆ ՊԱՏՐԱՍՏ ՉԷ.— Զօր. Պրէտլի շարունակելով իր վկայութիւնները ամերիկեան ծերակուտական յանձնախումբերու առջեւ յայտարարեց, թէ Ատլանտեանի 12 պետութիւնները ի վիճակի չեն ճիշդ հիմա կասեցնելու ռուսական յարձակում մը: Սպայակոյտի պետերը համոզուած են որ Յունաստան, Թուրքիա եւ Սպանիա եւս պիտի առնուին արեւմտեան պաշտպանութեան շրջանակին մէջ: Պարսկաստան եւ Եուկոսլաւիա երկու վտանգաւոր կէտեր են, մանաւանդ առաջինը, նաւթային վէճին պատճառով: Բայց, զօրավարը չի կարծեր որ Ռուսիա «բան մը» պիտի ընէ Պարսկաստանի մէջ, նախ քան ուրիշ տեղ, ուրիշ «բան մը» ընելը: Անդրադառնալով Քորէայի պատերազմին, զօր. Պրէտլի բսաւ թէ ամերիկեան ուժերը հոն ունեցած են 141.955 կորուստներ, 69.276ը կռիւներու հետեւանքով, 72.679ը կռիւներէ դուրս: Ասոնց 10.680ը սպաննուած են կռիւներու մէջ եւ 612ը ուրիշ պատճառներով:

ՉՈՐՍ ՓՈԽԱՆՈՐԴՆԵՐԸ նորէն գումարուեցան առջի օր: Նիստը տեւեց երեք վայրկեան: Հերթական նախագահը ամերիկեան պատուիրակն էր, բայց ոչ ոք խօսք առնել ուզեց:

ՌՈՒՄԲ ՄԸ նետուեցաւ Տըպլինի բրիտանական դեսպանատան վրայ, անծանօթներու կողմէ:

ՆՈՐ ԽԼՐՏՈՒՄՆԵՐ կը նշմարուին Թունուզի մէջ: Նախարարական խորհուրդը առջի օր զբաղեցաւ այս հարցով եւ կարդաց Թունուզի պէյին մէկ նամակը, որ գանգատներ կը յայտնէր:

ԿՐԸՆՈՊԼԻ մէջ, լեհ Ֆրանչիսէք Կրապովսքիի տունը այցելած է կարմիր գործակալ մը եւ ազդարարագիր մը յանձնելով անոր կնոջ, արգիլած է գրագիլ քաղաքականութեամբ եւ «հակալեհ քարոզութեամբ»: Լեհը, ի պատասխան, մամուլով կը յայտարարէ, թէ պիտի չհնազանդի Մոսկուայի այդ հրամանին: «Մենք, տարագիրներս, պարտաւոր ենք խօսիլ ի դիմաց լեհ ժողովուրդին, որուն արգիլուած է խօսիլ եւ ըսել ճշմարտութիւնը Ռուսիոյ մասին»:

## ՍՈՐՊՈՆԻ ՄԵԾ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ԿԻՐԱԿԻ, 27 ՄԱՅԻՍ 1951, ԺԱՄԸ 2ԻՆ

Համաժողովրդական հանդիսաւոր տօնակատարութիւն Վարդանանց Հերոսամարտի

1500ամեակին առիթով

Կազմակերպուած Փարիզի Հայոց եկեղեցւոյ, Կրօնական Ընկերակցութեան կողմէ:

Հովանաւորութեամբ Կաթողիկոսական Պատուիրակ ԱՐՏԱՒԱԶԴ ԱՐՔ. ՍԻՒՐՄԷԵԱՆԻ:

Նախագահութեամբ

Պ. ԱՐՄԵՆԱԿ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆԻ

Ցայտագիրը կը պարունակէ.— Ոգեկոչում Վարդանանց դիւցազնամարտի բանախօսներու կողմէ:

Մուտքի տոմսերը ժողովրդական գիներով, 100, 150 եւ 250 ֆրանք:

---

Ֆ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԱՆԿԷՆԻ մասնաճիւղի հանդէսը Կիրակի, 3 Յունիս, ժամը 15էն կէս գիշեր: Գեղարուեստական բաժին եւ պարահանդէս, 30 rue de la Libération, Անկէն:

Մանրամասնութիւնները յաջորդով:

## ՄԱՅԻՍ 28Ը

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Մայիս 26ին, Շաբաթ երեկոյ, Horlogeի սրահին մէջ:

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Լիոնի Վարանդեան կոմիտէի:

Կը նախագահէ Պ. Կ. ՏԷՐՄՈՅԵԱՆ

Կը խօսի Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին:

Հանդէսէն վերջ խնջոյք մինչեւ առաւօտ, Յոյներու սրահը:

×

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Կոմիտէի, մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի, Կապոյտ Խաչի, Հ. Մ. Ը. Մ.ի, Հայ Կամաւորներու եւ Մարտիկներու Միութեան, Վասպուրականի եւ Տարօն Տուրուբերանի Հայր. Միութեանց:

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին, քաղաքապետարանի սրահը:

Կը նախագահէ Պ. Կ. ՏԷՐՄՈՅԵԱՆ

Կը խօսի ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

Կը մասնակցի նաեւ Տիկին Ն. Վարժապետեան (Լիոնէն): Մուտքը ազատ է

×

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Կոմիտէի, մասնակցութեամբ Ֆր. Կապ. Խաչի, Նոր Սերունդի, Կամ. եւ Ռազմիկ. Միութեան:

Այս կիրակի երեկոյ ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Տան մէջ:

Կը նախագահէ Պ. Կ. ՏԷՐՄՈՅԵԱՆ

Կը խօսի Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

×

### ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ՝ Հ. Յ. Դ. «Ս. Մինասեան» ենթակոմիտէի, մասնակցութեամբ Նոր Սերունդի եւ Ֆր. Կապոյտ Խաչի մասնաճիւղերուն:

Այս շաբաթ իրիկուն, ժամը 9էն մինչեւ լոյս, քաղաքապետարանի սրահը, 22 rue Voltaire:

Կը նախագահէ՝ ընկեր Պ. ՊԵՏՐՈՍԵԱՆ

Կը խօսի՝ ընկեր ՀՐ. ԱԿՈՆԱՅԵԱՆ

Գեղարուեստական բաժին.—

Պ. Աւ. Քիւփէլեան (երգ), Տիկին Գեղաճոյշ (արտասանութիւն), ինչպէս նաեւ հայկական եւ կովկասեան պարեր:

Ժամը 11ին կը սկսին միջազգային պարերը:

Նուագախումբ՝ ԿԱՐՕ ՍԱՐԵԱՆԻ:

Buffet Մուտք՝ 125 Ֆր. Attractions

★

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

2 Յունիս, շաբաթ գիշեր, մինչեւ լոյս, Variétésի մէջ:

### ԿԱՐՏԱՆԻ ՄԷՋ

Յունիս 3ին, կիրակի կէսօրէ վերջ, Պիվէոի Հ. Յ. Դ. «Գեղունի» տան մէջ:

---

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ.— Ազգային մեծ բարերար Մըկրտիչ Սանասարեանի, կտակակատար Կ. Եզեանցի, Հաստատութեան տեսուչներուն, ուսուցիչներուն եւ սաներուն տարեկան հոգեհանգիստը, այս կիրակի, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ: Հանգուցեալներուն յիշատակը յարգողները կը հրաւիրուին ներկայ ըլլալ:

---



Imprimerie DER AGOPIAN, 17, rue Damesme (13)
Le Gérant : A. NERCESSIAN

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շրջ. վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ ընկեր-ընկերուհիները այս երկուշաբթի ժամը 19.30ին, Ահարոնեան ակումբը: Ներկայ կ'ըլլայ ընկեր Ս. Տէր Թովմասեան:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շրջ. վարչութիւնը կազմակերպած է ընկերա-համակրական դասախօսութիւն մը, Պուլվար Օտտոյի մէջ, այս երեքշաբթի ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Դասախօս ընկեր Ս. ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ: Սիրով կը հրաւիրուին Վռամեան ենթակոմիտէի ընկերները, Նոր Սերնդականները, եւ Կապոյտ Խաչի անդամուհիները:

## Յունահայ գաղութը

Հ. Մ. Ը. Մ.ի Աթէնքի ներկայացուցիչը, Վարդգէս Շահինեան, որ վերջերս Սուրիա - Լիբանան գացած էր, մասնակցելու համար պատգամաժողովին, հետեւեալ տեղեկութիւնները կը հաղորդէ յունահայ գաղութի մասին. —

Գաղութը երբ 1922ին կազմուեցաւ, կը բաղկանար 80 հազար Հայերէ: 1924ին այս թիւը իջած էր 60 հազարի, իբրեւ հետեւանք շատ մը Հայերու Ֆրանսա եւ այլուր գաղթելուն: 1925ին մաս մը ներգաղթեց Հայաստան եւ մինչեւ 1928, թիւը իջաւ 40 հազարի: Յետոյ գաղթեցին դէպի Հարաւ. Ամերիկա եւ Համբանքը իջաւ 32 հազարի: 1945էն մինչեւ այսօր չորս հազար Հայեր մեկնեցան Հարաւային Ամերիկա, իսկ 1946—47ին աւելի քան 18 հազար Հայեր ներգաղթեցին Հայաստան: Յունաստանի այսօրուան հայ գաղութի թիւը մօտ 9000 է:

Հայերը ընդհանրապէս համախմբուած են մայրաքաղաքը, Աթէնք եւ շրջականերն ու գաւառները, Պիրէոն, Սելանիկ, Ֆիքս, Քօքինիա, Սինկրու, Նէա Սմիրնի, եւն.: Փոքր թիւով Հայեր կան նաեւ կղզիներու եւ Հիւսիսային Յունաստանի մէջ, — Գավալա, Ալեքսանդրապոլիս (Տէտէաղաճ), Քոմոթինի (Կիւմիւլճինա), Տիտիմոթիխոն (Տէմոթիքա), Քսանթի, եւայլն :

Աթէնքի մէջ կայ Առաջնորդարանը, նորաշէն եկեղեցիով: Բոլոր թաղերուն մէջ կան եկեղեցիներ, իրենց կից ազգ. վարժարաններով: 1950էն ի վեր, երկու մասի բաժնուած վարժարանները (Բարեգործական եւ Կապոյտ Խաչ) միացան: Ուսումնական Խորհուրդը ստանձնած է կրթական գործը, Ազգ. Կեդր. Վարչութեան հովանաւորութեան տակ: Քօքինիոյ եւ Ֆիքսի ազգ. վարժարաններուն մէջ կայ 500 աշակերտ: Կաթողիկէ համայնքը չունի իր վարժարանը, սակայն կ'օժանդակէ մեր վարժարաններուն եւ իրենց զաւակներն ալ հոն կը յաճախեն: Բողոքական համայնքը չի մասնակցիր դպրոցներու միացման:

Հայերը ներկայիս նիւթական միջակ վիճակ ունին, ընդհանրապէս արհեստաւորներ են, բայց կայ նաեւ վաճառականներու փոքր թիւ մը: Հպատակները կը վայելեն յոյն քաղաքացիի բոլոր իրաւունքները :

Հայկական կեանքի մէջ կարեւոր դեր ունի Կապոյտ Խաչը, որ ամէնէն աւելի կը զբաղի վարժարաններու նիւթական մատակարարութեամբ: Յունաստանի մէջ միակ կանացի կազմակերպութիւնն է: Անոր գլխաւոր գործերէն մէկն ալ ամառնային ՔԷմփերն են, տկարակազմ աշակերտներու համար :

Երիտասարդական կազմակերպութեանց մէջ Հ. Մ. Ը. Մ.ն է որ գոյութիւն ունի 1924էն ի վեր: Նախապէս հիմնած են «Արմենիա» ֆութպոլի խումբը, որ երկու տարի մասնակցած է Յունաստանի Ա. կարգի ախոյենական մրցումներուն, պատուաբեր յաջողութիւններով: Հ. Մ. Ը. Մ. ունի իր մասնաճիւղերը: Մինչեւ 1932 գոյութիւն ունեցած սկաուտական խումբերու անդամներուն թիւը անցած էր հազարը: Ներկայիս, Հ. Մ. Ը. Մ.ի ֆութպոլի խումբը կը մասնակցի Գ. դասի ախոյենական մրցումներուն: Կան Պասքէթպոլի 4 խումբեր (2 աղջկանց եւ 2 մանչերու) Աթէնքի եւ Սելանիկի մէջ: 1950էն ի վեր, սկաուտական կազմակերպութիւնը դրուած է ամուր հիմերու վրայ եւ ինչպէս առաջ, հիմա ալ կ'անդամակցի Յունական Սկաուտական Դաշնակցութեան: Կը մասնակցի տեղական բոլոր շարժումներուն, իր առանձին խումբերով:

Հ. Մ. Ը. Մ.ը, 1950ի Լոնտոնի Միջազգային Հանդիպումին մասնակցեցաւ երեք սկաուտներով, իսկ Յոյները՝ 15 սկաուտներով:

Հ. Մ. Ը. Մ.էն զատ եւս կան մարզական միութիւններ: Մարմնակրթական շարժման համար Քօքինիայի մէջ կ'օգտագործուի Կապոյտ Խաչի Զաւարեան մանկապարտէզի սրահը, իսկ Ֆիքսի մէջ կայ սեփական ակումբ: Գայլիկներու թիւը կը հասնի 260ի :

## Գաղութէ գաղութ

Պ. ՃՕՐՃ ՄԱՐՏԻԿԵԱՆ շարունակելով իր պտոյտները Միջին Արեւելքի մէջ, հանդիպած է նաեւ Դամասկոս, ուր այցելած է Հանրապետութեան նախագահ՝ Հաշիմ պէյ Աթասիի, ընկերակցութեամբ գնդապետ Հրանտ պէյ Մալոյեանի, նախկին երեսփոխան Ֆրէտ պէյ Արսլանեանի եւ ընկեր Սարգիս Պապիկեանի: Սիրալիր ընդունելութենէ մը վերջ, հանրապետութեան նախագահը յայտարարած է, թէ ինք եւ իր ժողովուրդը միշտ գոհ են Հայերէն: «Վստահ ենք որ անոնք միշտ լաւ, հաւատարիմ քաղաքացիներ են: Անոնք մեր եղբայրներն են ու կը վայելեն սուրիական քաղաքացիի իրաւունքները: Հայերուն հանդէպ մեր ունեցած զգացումներուն ծանօթ է գնդ. Հրանտ պէյ:» Պ. Ճ. Մարտիկեան շնորհակալութիւն յայտնելով ըսած է.— «Մենք միշտ երախտապարտ ենք ձեզի եւ Սուրիացի ժողովուրդին: Ես ամերիկեան քաղաքացի եմ, բայց հպարտ եմ Հայ ծնած ըլլալուս համար: Ամերիկայի 150 հազար Հայերը մեծ սէր եւ երախտագիտութիւն ունին Արաբ ժողովուրդին հանդէպ եւ արաբական դատի քարոզիչներն են»: Պ. Ճ. Մարտիկեան այցելած է նաեւ կրթական նախարար Րաիֆ պէյ Մալքիի, որ ըսած է.— «Պզտիկուց ծանօթ եմ այս սքանչելի ժողովուրդին: Երբ 1915ին, Հայեր ծննդավայրս Համա եկան, ուշադրութիւնս գրաւեցին իբրեւ աշխատասէր ժողովուրդ: Այսօր ալ վստահ ենք Հայերու հաւատարմութեան: Անոնք միշտ եղած են մեզի հետ, մեր ազատագրական պայքարին մէջ:

Պ. Մարտիկեան այցելած է նաեւ Սուրիոյ սկաուտ. կեդրոնը, ընդունուած է սկաուտապետ Պէքրի պէյի կողմէ: Պ. Մարտիկեան յայտարարած է, թէ ինք Հ. Մ. Ը. Մ.ի հիմնադիր անդամներէն է եւ անոր սկաուտը, իսկ հիմա՝ ամերիկացի սկաուտ: Պէքրի պէյ պատուած է Պ. Ճ. Մարտիկեանը Սուրիացի սկաուտի տիտղոսով, յանձնելով անդամատետր մը:

Պ. Ճ. Մարտիկեան, իբրեւ համակրանքի արտայայտութիւն Հալէպի «Արեւելք» օրաթերթին, հազար սուրիական ոսկի (100 հազար Ֆր.) նուիրած է տպարանին եւ սրահի ֆոնտին :

ՀԱՄԱՏԱՆԻ (Պարսկաստան) հայ համայնքը կը բաղկանայ շուրջ հազար հոգիէ: Հայերը ունին իրենց առանձին թաղամասը, եկեղեցին, ազգային դպրոցը: Այս զոյգ հաստատութիւնները չունին եկամուտի մնայուն աղբիւր: Ժողովուրդը կուտայ շուրջ քսան հազար թուման տարեկան: Եկեղեցին բարձրապարիսպ եւ գեղեցիկ շէնք մըն է: Ծխատէր հոգեւոր հովիւն է Արիստակէս Միրզայեան : Երեք տարուան մէջ համայնքը ունեցած է 45 մկրտութիւն, 10 պսակ եւ 13 մահ: Ազգային դպրոցը ունի 170 երկսեռ աշակերտ, 10 դասատու, տեսչութեամբ Պ. Արամ Ալլահվերդեանի: Համայնքին գրադարանը կը պահուի «Րաֆֆի» Մշակութային Միութեան հսկողութեամբ: Այս միութիւնը ունի 60 անդամ - անդամուհիներ: Կայ նաեւ, 30 տարիէ ի վեր, Հայ Կանանց Բարեգործական Միութիւնը, 50 անդամուհիներով, որոնք կ'օգնեն չքաւորներուն եւ դպրոցին: Հայ համայնքը բարեկեցիկ է, որոշ թիւով Հայեր կը զբաղին գործի առեւտուրով : Քաղաքը ունի մէկ շարժանկարի սրահ, հիմնուած երկու Հայերու նախաձեռնութեամբ: Հայերը ունին նաեւ կարող բժիշկներ, մասնագէտներ եւ արհեստաւորներ, որոնք սեփական գործի տէր են: Քսան տուն հայ բողոքական կայ, որոնք ունին իրենց ժողովարանը: Պատուելին է Յակոբ Մուղոյեան, որ 25 տարիէ ի վեր կը պաշտօնավարէ: Հինգ տուն ալ չարաթապահներ կան: Այս երեք յարանուանութիւնները սիրով կապուած են իրարու :

ութիւ, Ֆրանսացի օրագրող մը հարց կուտայ.

— «Ընկերվարական պետը աւելի յիմա՞ր է թէ աւելի չարամիտ: Ի՞նչ կը հետապնդէ գործածելով լեզու մը, որ այնքան կը յիշեցնէ մի ոմն Հիթլէրը, գործի գլուխ գալէ առաջ: Իր ընդդիմութիւնը կամաւոր խափանարարութիւն մըն է եւ կը ձգտի պատրաստել մենատիրութեանց ճամբան: Եթէ ընդհանուր ընտրութեանց մէջ յաղթէ ընկերվարական կուսակցութիւնը, Պ. Շումախըր պիտի խաղայ Հիւկընպէրկի դերը եւ լայնօրէն պիտի բանայ արկածախնդրութեանց ճամբան իր զօրավարներուն առջեւ: Դեռ 1947ին, իրաւունք ունէինք յուսալու, որ գերմանական ընկերվարութիւնը աւելի լաւ կերպարանքով մը ի յայտ պիտի գայ, քան ինչ որ էր Վայմարեան հանրապետութեան շրջանին: Ամէնէն սնամէջ ազգայական կարօտաբաղձութիւնը հրահրելով, գերմանացի ընկերվարականները կարծել պիտի տային, թէ իրապէս ոչինչ կը փոխուի Գերմանիոյ մէջ եւ թէ բոլոր Գերմանացիներու ուզած Եւրոպան, Գերմանիոյ կողմէ ղեկավարուելիք Եւրոպան միայն կրնայ ըլլալ»:

Թ.Ա.Թ.

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (66)

# Կ. ՊՈԼՍՈՅ ԳՐԱՒՈՒՄԸ

Ե.

Քօքոյի նաւերէն քառասունի չափ նաւազներ աղէտին պահուն յաջողեր էին լողալով մինչեւ ծովեզերք հասնիլ : Հոն Թուրքերը անմիջապէս ձերբակալեցին այս դժբախտ պատանիները, ձեռքերը կռնակներուն կապած տարին պարիսպին առջեւ եւ ծովեզերքին վրայ, Սուլթանին հրամանով, խողխողեցին իրենց զէնքի ընկերներուն աչքին առջեւ, որոնք պարիսպին բարձունքէն հանդիսատես կ'ըլլային, կատաղութենէն դողալով: Թէտալտի կ'ըսէ թէ «սուր ցիցերու զարկին իրենց յետոյքէն» եւ թէ անոնց մէջ դժբախտ նաւուն սպաներէն ալ կային: Այնքան զարհուրելի եղաւ պաշարեալներուն զգացած ցաւը որ կայսրը որոշեց արինալի վրէժ մը լուծել եւ իր հրամանով իրարու կապուած բաղմաթիւ Թուրք գերիներ, երկու հարիւր վաթսունի չափ, պարիսպին վրայ շարեցին ու ամէնէն բարձր որմածակերէն կախեցին, Թուրք բանակին աչքին առջեւ, ճիշդ վենետիկցի խեղճ նաւազներու չարչարուած տեղին դիմացը :

Բոլոր այս գերիներու մահացումը յայտնի է որ անպատում սարսափով լեցուն տեսարան մը եղաւ :

Այս աղիտալի անյաջողութիւնը, կ'ըսէ Ֆրանցէս, Ճենովացիներու եւ Վենետիկցիներու միջեւ բուռն վիճաբանութիւններու պատճառ եղաւ: Առաջինները կ'ամբաստանէին երկրորդները, մանաւանդ Քօքօն, թէ իրենց անկարողութեան պատճառով յառաջ բերին այս աղէտը: Կայսրը, հասկնալով որ վերջի ի վերջոյ գործը կոխուի պիտի յանգի, աճապարանօք անոնց մօտ գնաց եւ պաղատեցաւ որ այս ահռելի պատերազմին արդէն այնքան զարհուրելի սարսափներուն վրայ ներքին կռիւի մը նոր զարհուրանքն ալ չաւելցնեն, ու այնքան լաւ խօսքեր ըրաւ որ կրցաւ վերջապէս հանդարտեցնել զիրենք :

Բոլոր այդ օրերը, եւ ամսուն մնացեալ օրերն ալ Թուրքերը շարունակական յարձակումներ գործեցին ցամաքի կողմի պարիսպին դէմ: Ապրիլ 18ին իրենց առաջին յարձակման անյաջող վերջաւորութեան յաջորդեց, գրեթէ անընդհատօրէն, կատաղի թնդանօթաձգութիւն մը :

« Թնդանօթները, կ'ըսէ Պարպարօ, վայրկեան մը չէին դադրեր որոտալէ եւ երբեմն պարիսպին մէկ մասը կը փլցնէին, երբեմն ալ քաղաքը մեծ վտանգի մէջ կ'իյնար, իսկ մենք, քաղաքին մէջ, ամէն պէտք եղած տեղերուն տակառներով, փայտէ ձողերով եւ հողերով նորոգութիւններ ըրինք, այնպէս լաւ որ առաջուանին նման, ճշմարիտ պարիսպի մը պէս ուժով կը կանգնէին նորէն»:

Հաւանական է որ, կ'ըսէ Փիրս, Ապրիլ 23ին, Թուրքերը մեծ թնդանօթը իր տեղէն հանած եւ Սէն Ռոմէնի դրան դիմացը հաստատած ըլլան, այսինքն այն տեղը ճիշդ, ուր Ճիուսթինիանի իր խումբովը դիրք բռնած էր, եւ պատերը ամէնէն տկար եւ ամէնէն նուազ բարձր էին: Այդ վայրկեանէն սկսեալ, այդ հրէշային մեքենան վայրկեան մը չդադրեցաւ պարիսպի այս մասը ծեծելէ ու մինչեւ վերջն ալ շարունակեց այսպէս :

(Շար.)

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

### ՀԵՂԻՆԱԿԻՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ

ՏԷՍԻՆ.— «Յառաջ»ի Մայիս 16ի թիւին մէջ, «Վասպուրականի Հերոսամարտը» վերնագրով թղթակցութեամբ ակամայ զանցառութիւն մը ըրած ըլլալով, խղճի պարտք կը համարիմ դարմանել զայն: Այդ տօնակատարութեան ընթացքին ներկայացուած երկու պատկերները՝ «Շիրինի տիկնոջ սպանութիւնը» եւ «Վռամեան բանտին մէջ», առնուած էին Պ. Ղ. Մելոյեանի «Վասպուրականի Հերոսամարտը» գրքէն :

Յաճախ այսպիսի պարագաներ մոռացութեան կը տրուին թղթակիցներու կամ կազմակերպիչ մարմիններու անփութութեան պատճառով, ինչ որ անարդար է: Որեւէ ստեղծագործութիւն պէտք է վարձատրուի բարոյական թէ նիւթական տեսակէտով, մանաւանդ մտային աշխատանք մը, որ յաճախ արդասիքն է երկար տարիներու տքնութեան:

Այս առթիւ Պ. Ղ. Մելոյեան արդարօրէն կը գանգատի, թէ իր գործերը կը ներկայացուին զանազան վայրեր, առանց նոյնիսկ յիշելու հեղինակի անունը: Անշուշտ իրեն կը վերաբերի պաշտպանելու իր իրաւունքները եւ սակայն լաւ կ'ըլլար, որ քիչ մը օրինակ առնէինք եւրոպական երկիրներէն, ուր մասնաւոր օրէնքներ պաշտպան կը կանգնին արուեստագէտներու եւ գրական մշակներու իրաւունքներուն:

Մեր հեղինակները — խօսքս ընդհանրապէս թատերգակներու մասին է — դժբախտաբար զրկուած են նման օրէնքներու առաւելութիւններէն, հետեւաբար մեր բոլորին պարտքն է յարգել անոնց գրական վաստակը եւ մեր հնարաւորութեանց չափով օգտակար ըլլալ նաեւ նիւթապէս, եթէ կ'ուզենք որ ազգային թատերական գրականութիւնը եւս զարգանայ եւ հարստանայ նորանոր գործերով:

Գ. Պօյաճեան

